## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։






# ՍՄԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ Է

### ՅՈՒ. ԻՎԱՆՈՎ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը, որը վերջերս ավարտեց իր աշխատանքը, շարունակում է մնալ ամբողջ աշխարհի հասարակայնության ուշադրության կենտրոնում։

Գնահատելով ՍՄԿԿ XX համագումարը, բոլոր երկրների մամուլը նշում է ,որ համագումարի աշխատանքը և նրա ընդունած որոշումները հսկայական միջազգային նշանակություն ունեն և նրանք աչքի ընկնող դեր կխաղան ժողովուրդների կյանքում։ Այս բանը չեն կարող չխոստովանել նույնիսկ բուրժուական մամուլի օրգանները։ «Կոմունիստական պարտիայի XX համագումարը Մոսկվայում,— գրել է ամերիկյան «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը,— ուրվագծվում է որպես հետպատերազմյան տարիների ամե-

նախաշոր պատմական իրադարձություններից մեկը»։ Շվեցարական «Գազետա դե լոզաննի»-ը նույնպես ընդունում է, որ ՍՄԿՊ XX համագումարը լիովին արժանի է կոչվելու պատմական համագումար։ Այդ համագումարը,— ընդգծում է թերթը,— ամենակարևոր գործոնն է միջազգային կյանքում։

Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը հիացած է վեցերորդ հնգամյա պլանի խնդիրների վիթխարի մասշտաբներով։ Վեցերորդ հնգամյա պլանի Դիրեկտիվներում, որ միահամուռ կերպով հաստատեց ՍՄԿՊ XX համագումարը, ամբողջ աշխարհի աշխատավորները տեսնում են Սովետական Միության դեպի կոմունիզմ կատարվող առաջընթաց շարժման վառ արտահայտությունը, տեսնում են իրենց լուսավոր ապագան։

Անվերադարձ կերպով անցել է այն ժամանակը, երբ կապիտալիստական աշխարհի ներկայացուցիչները ծաղրանքով իրենց կասկածներն էին հայտնում սովետական հնգամյակների իրագործման հնարավորության մասին։ Այժմ նույնիսկ ամենառեակցիոն կապիտալիստական շրջանները ստիպված են ընդունել, որ սովետական տնտեսական պլանները միանգամայն ռեալ են և իրագործելի։



Նոր տարնապով «Նյու-Յորք Թայմս» թերթը գրում է, որ Սովետական Միությունն իր առջև դնում է համարձակ, բայց կենսագործելի խնդիր՝ պատմական ամենակարճ ժամկետներում խաղաղ մրցության ճանապարհով հասնել և անցնել տնտեսապես առավել զարգացած կապիտալիստական երկրներից, մասնավորապես Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ «Արևմտյան տնտեսագետները,— դառնությամբ նշում է ֆրանսիական բուրժուական «Էկո» թերթը,— խիստ անհանգստացած են այն փաստով, որ սովետական արդյունաբերությունն ավելի արագ տեմպերով է զարգանում, քան կապիտալիստական երկրների արդյունաբերությունը»։

Նոր հնգամյա պլանը, որը նախատեսում է արդյունաբերության հետագա արագ զարգացում, գյուղատնտեսության շեշտակի վերելք, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացում, ամբողջ աշխարհին ակնառու և համոզիչ կերպով ցուցադրում է սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունները կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Այդ առավելություններն այն են, որ տնտեսության և կուլտուրայի զարգացման համար միլիոնավոր աշխատավորների տաղանդների և ընդունակություն-

ների ծաղկման համար սոցիալիզմն ապահովում է անսահմանափակ հնարավորություններ։

ՍՄԿՊ XX համագումարը վառ կերպով ցույց տվեց սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության հետագա ամրապնդումը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի՝ ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդումը։ Սովետական ժողովրդի այս նվաճումները ամբողջ աշխարհի աշխատավորության աչքում է՛լ ավելի են բարձրացնում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հեղինակությունը։

ՍՄԿՊ XX համագումարում որպես հյուրեր ներկա էին եղբայրական կոմունիստական և բանվորական 55 պարտիաների դելեգացիաներ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի օրինակով այդ պարտիաները սովորում են աշխատել մասսաների հետ, ղեկավարել խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար ժողովուրդների մղած պայքարը։ Եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների շուրջը համախմբվում են մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներով, դեմոկրատիայի և սոցիալիզմի գաղափար-



ներով ոգեշնչված հարյուր միլիոնավոր մարդիկ։

Համագումարում ունեցած իրենց ելույթներում եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչները ընդգծեցին ամբողջ մարդկության սոցիալական պրոգրեսի համար ՍՄԿՊ-ի վարած մեծ ստեղծարար աշխատանքի հսկայական կարևորությունը, միջազգային բանվորական շարժման համար XX համագումարի պատմական նշանակությունը։

Չինաստանի Կոմունիստական պարտիայի ԿԿ-ի ողջույնի մեջ, որը ստորագրել էր ընկեր Մաո Ցզե-դունը և որը համագումարի ամբիոնից կարդաց ընկեր Չժու Դեն, ասվում է.

«ՍՄԿՊ XX համագումարը ստեղծագործական հսկայական ավանդ է մուծում Սովետական Միությունում կոմունիզմի կառուցման հետագա գործի, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանության և ամրապնդման գործի մեջ։ Ձեր համագումարը չին ժողովրդի և աշխարհի մյուս երկրների ժողովուրդների համար նոր ոգեշնչող ուժ է հանդիսանում»։

Լեհական բանվորական միացյալ պարտիայի կողմից հանգուցյալ ընկեր Բ. Բե-

րուտը համագումարում ունեցած իր ելույթում հայտարարեց. «Մենք խորապես համոզված ենք, որ 20-րդ համագումարը հզոր խթան կհանդիսանա Սովետական Միության և նրա բոլոր սոցիալիստական ազգերի հետագա ծաղկման համար, հզոր խթան կհանդիսանա ամբողջ մեր սոցիալիստական լագերի հետագա համախմբման և միասնության համար, խաղաղության համար պայքարող բոլոր ժողովուրդների համերաշխության ամրապնդման, պրոգրեսի և սոցիալիզմի ուժերի հետագա աճի համար»։

Աճել և հզորացել է ՍՄԿՊ-ի ուժը, էլ ավելի է ամրապնդվել նրա շարքերի միասնությունը։ ՍՄԿՊ XX համագումարը ամբողջ վճռականությամբ ընդգծեց պարտիական կյանքում լենինյան նորմաների պահպանման, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի հետևողական իրագործման անհրաժեշտությունը։ Համագումարը դատապարտեց մարքսիզմ-լենինիզմի տգոմ խորթ անհատի պաշտամունքը, որի տարածումը հասցնում էր ժողովրդական մասսաների դերի և պարտիայի կոլեկտիվ ղեկավարության թերագնահատմանը։

Ինդոնեզիայի կոմպարտիայի «Խարիան Ռակյատ» թերթը նշում է. «ՍՄԿՊ-ն իր



XX համագումարը եկավ կոմունիզմի կառուցման փորձով հարստացած, գաղափարապես և կազմակերպչորեն էլ ավելի միասնական և համախմբված։ Սովետական ժողովուրդն ավելի սերտորեն համախմբվեց կոմունիստական պարտիայի շուրջը։ Սովետական Միության միջազգային հեղինակությունն ու ազդեցությունը դեռ երբեք այնքան մեծ չեն եղել և առաջավոր մարդկության սերը նրա նկատմամբ երբեք այնպես ուժեղ չի եղել, ինչպես այժմ»։

Աննախընթաց կերպով մեծացել է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի դերը և հեղինակությունը միջազգային հարցերի լուծման գործում։ ՍՄԿՊ-ն խոշոր ավանդ մտցրեց մարքսիզմ-լենինիզմի մեջ, ստեղծագործորեն մշակելով ժամանակակից միջազգային դրության կարևորագույն հարցերը։

Մարքսիստական-լենինյան թեորիայի հետագա ստեղծագործական զարգացումն են հանդիսանում պատմական նոր փորձի հիման վրա պարտիայի կողմից մշակված հետևությունները երկու սիստեմների խաղաղ գոյակցության, արդի դարաշրջանում պատերազմների կանխման հնարավորության,

տարբեր երկրների՝ սոցիալիզմին անցնելու ձևերի մասին։

Տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության մասին լենինյան սկզբունքը, որը հանդիսանում է Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը, համապատասխանում է երկրագնդի բնակչության ամենալայն խավերի շահերին։

Չինական «Ժենմինժիբաո» թերթը անդրադառնալով երկու սիստեմների գոյակցության հարցին, գրում է. «ՍՄԿՊ XX համագումարը, հիմնվելով ժամանակակից միջազգային իրադրության և երկու սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորության մասին լենինյան թեորիայի վրա, որոշեց սովետական արտաքին քաղաքականության հետագա տարիների կուրսը։ Միջազգային իրադրության խոր վերլուծությունը, որ տվեց պարտիայի XX համագումարը, բոլոր խաղաղասեր ժողովուրդների համար հսկայական ոգեշնչող ուժ է։ ՍՄԿՊ XX համագումարը ցույց է տալիս, որ Սովետական Միությունը հաստատ հավատում է երկու սիստեմների խաղաղ մրցակցությանը և ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման հնարավորությանը։



Հնդկական «Նայյա զամանա» պրոգրեսիվ թերթը մերկացնում է ռեակցիոն մամուլը, որն ամեն կերպ աշխատում է խեղաթյուրել խաղաղ գոյակցության սովետական քաղաքականությունը, «Համագումարում ելույթ ունեցած դելեգատները,— նշում է թերթը,— պարզ հայտարարեցին, որ թեև ՍՍՌՄ-ում կառուցվում է կոմունիստական հասարակարգ և սովետական ժողովուրդը դեմ է կապիտալիզմին, նա միշտ հանդես է եկել և հանդես է գալիս մյուս ժողովուրդների ներքին գործերին միջամտելուն դեմ»։

ՍՄԿՊ XX համագումարը միջազգային բանվորական շարժմանը զինեց համաշխարհային զարգացման հեռանկարների ճիշտ ըմբռնմամբ։ Մեր դարաշրջանի գլխավոր գիծն այժմ մեկ երկրի շրջանակներից սոցիալիզմի դուրս գալն է և նրա վերածումը համաշխարհային սիստեմի։ Կապիտալիզմն անզոր եղավ խանգարել այդ համաշխարհային-պատմական պրոցեսին։ Համաշխարհային երկու հակադիր տնտեսական սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների միաժամանակյա գոյությունը, որոնք զարգանում են տարբեր օրենքներով և հակադիր ուղղություններով, անվիճելի փաստ է դարձել։ Սոցիալիզմի

լագերն այժմ անընդհատ աճող ներգործու-
թյուն է հանդես բերում համաշխարհային
իրադարձությունների ընթացքի վրա։ Սո-
ցիալիստական սիստեմը հաղթականորեն
առաջ է ընթանում, չգիտենալով ճգնաժամեր
և ցնցումներ։ Այդ միևնույն ժամանակ կա-
պիտալիստական սիստեմի ընդհանուր ճըգ-
նաժամը շարունակում է խորանալ. սրվում
են կապիտալիզմի բոլոր հակասությունները։
Կապիտալիզմն անշեղորեն ընթանում է
դեպի տնտեսական և սոցիալական նոր ցըն-
ցումներ։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի համաշխարհային պատմական իրադարձություն է իմպերիալիզմի գաղութային սիստեմի տեղի ունեցող քայքայումը։ Գաղութային աշխարհի ժողովուրդների մղած ազգային-ազատագրական պայքարի շնորհիվ վերջին տասնամյակի ընթացքում ավելի քան 1 միլիարդ 200 միլիոն մարդ, այլ կերպ ասած. երկրագնդի բնակչության գրեթե կեսը ազատագրվել է գաղութային և կիսագաղութային ճնշումից։ Օրակարգի խնդիր է դարձել գաղութային սիստեմի լրիվ լիկվիդացումը։

Առանձնահատուկ կարևոր նշանակություն ունի այն հետևությունը, որ մեր ժամանակա-



շրջանում հնարավոր է կանխել պատերազմները։

Իհարկե, ուժի մեջ է մնում լենինյան դըրույթն այն մասին, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, պահպանվում է նաև պատերազմների ծագման տնտեսական հիմքը։ Կապիտալիստական մոնոպոլիաների շահերն արտահայտող ռեակցիոն ուժերը այսուհետև էլ կձգտեն ռազմական ավանտյուրաների և կարող են փորձել պատերազմ սանձազերծել, սակայն պատերազմների ճակատագրական անհրաժեշտություն չկա։

Աշխարհում այժմ գոյություն ունեն հասարակական և քաղաքական հզոր ուժեր, որոնք կարող են թույլ չտալ իմպերիալիստներին, որպեսզի նրանք պատերազմ հրահրեն, իսկ եթե նրանք փորձեն պատերազմ բորբոքել՝ կործանիչ հակահարված կստանան և նրանց ավանտյուրիստական պլանները կձախողվեն։ Այս խոսքերը, որ հնչեցին ՍՄԿԿ XX համագումարի ամբիոնից, տարածվեցին ամբողջ աշխարհով մեկ, թևավորելով, վստահություն և հույս ներշնչելով հարյուր միլիոնավոր մարդկանց, որ ժամանակակից պայմաններում հասարակական և քաղաքական առաջավոր ուժերի պայքարը, կազմակերպվածությունը և մարդկանց գի-

տակցական կամքը կարող են վճռական դեր խաղալ պատերազմների կանխման գործում։

Խաղաղության ուժերը, ընդգծեց ՍՄԿՊ XX համագումարը, աճում են։ Սոցիալիստական լագերի կողքին համաշխարհային ասպարեզ են դուրս եկել Եվրոպայի և Ասիայի մի խումբ խաղաղասեր պետություններ, որոնք իրենց արտաքին քաղաքականության սկզբունքն են համարում բլոկներին չմասնակցելը։ Միջազգային ասպարեզում, այսպիսով, ստեղծվեց ընդարձակ «խաղաղության գոտի», որն իր մեջ է ընդգրկում ինչպես սոցիալիստական, այնպես էլ ոչ սոցիալիստական պետություններ, այսինքն՝ երկրագնդի բնակչության կեսից ավելին։ Ներկայումս ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները՝ ամուր և երկարատև խաղաղության հիմք ստեղծելու համար։

Պատերազմները կանխելու հնարավորության մասին ՍՄԿՊ XX համագումարի ամբիոնից արված հետևությունը արագ կերպով դարձավ ամբողջ աշխարհի միլիոնավոր աշխատավորների սեփականությունը։ Արտասահմանյան երկրների մամուլը լայնորեն մեկնաբանում է մարքսիզմ-լենինիզմի այս նոր կարևոր դրույթը։

«Շնորհիվ սոցիալիստական լագերի հզո-



րության,— ընդգծում է ավստրիական «Էստերրեյխիշե ֆոլկսշտիմմե» թերթը,— և շնորհիվ միջազգային բանվորական շարժման ներկայիս մակարդակի, պատերազմներն արդեն ճակատագրական անհրաժեշտություն չեն»։

Հրատարակելով Իտալիայի Կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար Պալմիրո Տոլյատտիի Յունայտեդ պրեսս գործակալության Մոսկվայի թղթակցի հետ ունեցած ինտերվյուն, իտալական մամուլն իր մեկնաբանությունների մեջ մեծ տեղ է հատկացնում ինտերվյուի այն մասին, որտեղ հաստատվում է, որ պատերազմի ոչ մի ճակատագրական անհրաժեշտություն չկա։

Համաշխարհային ասպարեզում կատարված արմատական փոփոխությունները նոր հեռանկարներ են բաց անում ազգերի և երկրների համար՝ սոցիալիզմին անցնելու գործում։ «Միանգամայն հավանական է,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչևը պարտիայի XX համագումարին ՍՄԿՊ ԿԿ-ի տրված հաշվետու զեկուցման մեջ,— որ սոցիալիզմին անցնելու ձևերը ավելի և ավելի բազմազան կդառնան։ Ընդսմին պարտադիր չէ, որ այդ ձևերի իրագործումը բոլոր պայմաններում կապված լինի քաղաքացիական պատերազմի հետ»։

Լենինիզմը սովորեցնում է, որ սոցիալիզմին անցնելու ձևերը կարող են տարբեր լինել։ Մասնավորապես իրեն լիովին արդարացրել է սոցիալիզմին անցնելու այնպիսի ձևը, ինչպիսին է ժողովրդական դեմոկրատիան։ Մի շարք երկրներում սոցիալիզմին անցնելու ժամանակ կարող է գործադրվել բանվոր դասակարգի կողմից իր առաջավոր մասի գլխավորությամբ պառլամենտական այն մեծամասնության նվաճումը, որը հենվում է պրոլետարիատի և ամբողջ աշխատավորների մասսայական ռևոլյուցիոն շարժման վրա։ ՍՄԿՊ XX համագումարի կողմից մշակված այս նոր դրույթը կապիտալիստական և գաղութային երկրների աշխատավորների առջև բաց է անում պարզ հեռանկարներ դեպի պայծառ ապագան տանող նրանց պատմական շարժման ճանապարհին։

Երկրների և ազգերի սոցիալիզմին անցնելու ձևերի այս հարցն այժմ լայնորեն մեկնաբանվում է արտասահմանյան մամուլի կողմից։ Մեկնաբանողների մեծամասնությունը հանգում է այն բանին, որ ՍՄԿՊ XX համագումարը մարքսիզմ-լենինիզմի զարգացման այս հարցում նոր խոսք ասաց և նշում է, որ այդ բանը շատերին ստիպում է մտածել։



Արևմտյան Գերմանիայի «Դի վելտ» թերթի տեսաբան Կլաուս Մեներտը Արևմուտքի շատ գործիչների, «ոչ միայն սոցիալիստներին, այլ նաև ոչ սոցիալիստներին» խորհուրդ է տալիս ուշադրությամբ ուսումնասիրել ՍՄԿՊ XX համագումարում տրված հաշվետու զեկուցման այն մասը, որտեղ խոսվում է տարբեր երկրների սոցիալիզմին անցնելու ձևերի մասին։

ՍՄԿՊ XX համագումարի նշած ստեղծագործական աշխատանքների մեծ ծրագիրը արժանացավ ամբողջ ժողովրդի և բոլոր երկրների աշխատավորների միահամուռ և ջերմ հավանությանը։ Այդ ծրագիրը համապատասխանում է խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը ձգտող երկրագնդի բոլոր ժողովուրդների ամենախոր իղձերին։ ՍՄԿՊ XX համագումարի որոշումները նպաստում են բոլոր խաղաղասեր ուժերի հետագա համախմբմանը, միլիոնավոր մարդկանց ոգեշնչում են պայքարելու իրենց երջանկության համար, ամբողջ աշխարհի խաղաղության համար։

# ԶՐՈՒՅՑ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ԿԱՆԽՄԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Մ. ՍԱՖԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*Պատերազմների ծագման, պատճառների ու բնույթի միակ գիտական, ճիշտ բացատրությունը տալիս է մարքսիզմ-լենինիզմը և դա հասկանալի է, որովհետև միայն նա է հենվում պատմական մատերիալիզմի դրույթների և եզրակացությունների վրա։*

*Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրներ Մարքսը և Էնգելսը ցույց են տվել, որ պատերազմները պատմական, սոցիալական երևույթ են, որոնք հատուկ են թշնամական՝ անտագոնիստական դասակարգերի բաժանված հասարակություններին։*

*Պատերազմներ ծագեցին հասարակական տարբեր խմբակցությունների, պետությունների միջև այն բանից հետո, երբ առաջացավ մասնավոր սեփականությունը, առաջացան դասակարգեր ու պետություններ։*





*Պատերազմները համարելով պատմական երևույթ, մարքսիզմ-լենինիզմը պնդում է, որ այն ընդհանրապես կվերացվի, երբ վերացվի արտադրության միջոցների ու գործիքների մասնավոր կապիտալիստական սեփականությունը և երբ ամբողջ աշխարհում հաստատվի սոցիալիզմի թագավորությունը։ Մարքսիզմի գործի մեծ շարունակող անմահ Լենինը զարգացրեց պատերազմների վերաբերյալ մարքսիստական ուսմունքը և ստեղծեց ավելի ամբողջական, կուռ, մարքսիստական թեորիա պատերազմների ծագման պատճառների ու բնույթի վերաբերյալ՝ իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում։*

*Վ. Ի. Լենինը մշակեց բոլշևիկների պարտիայի թեորիան ու տակտիկան զանազան բնույթի պատերազմների մասին, ցույց տվեց սոցիալիստական պետությանը դրսի հարձակումներից պաշտպանելու միջոցները։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո Լենինը առաջ քաշեց երկու տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության հարցը։*

*Մարքսիզմ-լենինիզմը տարբերում է երկու կարգի, տեսակի պատերազմներ՝ արդարացի և անարդարացի պատերազմներ։ Անար-*

դարացի պատերազմները դրանք մեր դարաշրջանում իմպերիալիստական, թալանչիական-զավթողական պատերազմներն են, որոնք մղվում են իմպերիալիստական պետությունների կողմից աշխարհի վերաբաժանման, հումույթի աղբյուրներ, նոր ազդեցության շրջաններ ձեռք բերելու, թույլ երկրների անկախությունը, սուվերենությունը լիկվիդացնելու, համաշխարհային տիրապետության հասնելու համար։ Անարդարացի պատերազմ պետք է համարել իմպերիալիստական պետությունների կողմից սոցիալիստական երկրների դեմ հրահրվող պատերազմները։

Արդարացի պատերազմները դրանք ոչ զավթողական, ազատագրական պատերազմներն են, որոնք մղվում են երկիրը դրսի հարձակումներից պաշտպանելու, կապիտալիզմի ստրկացումից աշխատավորներին ազատագրելու, գաղութներն ու կախյալ երկրները իմպերիալիզմի լծից ազատագրելու և սոցիալիստական Հայրենիքը պաշտպանելու համար։

Կոմունիստները կողմնակից են արդարացի պատերազմներին, որովհետև դրանք թշնամաբար տրամադրված դասակարգային հասարակության պայմաններում միջոց



են կապիտալիզմի, իմպերիալիզմի լծից աշխատավորներին ազատագրելու, անարդարացի քաղաքական կարգը վերացնելու և այնպիսի հասարակական կարգ ստեղծելու, ուր իսպառ բացառված կլինեն պատերազմները։ Այդ արդարացի հասարակական կարգը սոցիալիստական-կոմունիստական հասարակությունն է։ Պատերազմները ավելի անխուսափելի դարձան իմպերիալիզմի դարաշրջանում, որովհետև իմպերիալիզմի ժամանակ ավելի սրվեցին կապիտալիստական երկրների, մոնոպոլիստական խմբերի միջև եղած հակասությունները, առաջ քաշվեց բաժանված աշխարհի վերաբաժանման հարցը։ Իմպերիալիզմի ժամանակ սկսեց գործել կապիտալիզմի անհամաչափության օրենքը, որը հայտնագործել էր Լենինը։

Առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմները նույնպես ծագեցին կապիտալիզմի տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացման, իմպերիալիստական պետությունների միջև հակասությունները ծայրահեղորեն սրվելու հետևանքով։

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի, ինչպես և երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ դեռևս թույլ էին այն ուժերը, որոնք ոչ միայն

պատերազմ չէին ցանկանում, այլև ուզում էին կանխել պատերազմները։ Ժողովուրդներին, աշխատավորներին միշտ էլ խորթ են եղել պատերազմները, որովհետև այդ պատերազմները ոչ միայն խլում են մարդկային մեծ զոհեր, այլև քայքայում, ավերում են ժողովրդական տնտեսությունը և մարդկանց պատճառում անհամար դժբախտություններ։

Առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների սանձազերծման գործում զգալի դեր խաղաց 2-րդ Ինտերնացիոնալի օպորտունիստների դավաճանությունը, երբ նրանք անցան բուրժուական կռվող կառավարությունների կողմը։ Աջ սոցիալիստները նույնպես դավաճանեցին աշխատավորներին։ Այս բոլորից բացի այդ ժամանակաշրջանում խաղաղության ցանկացողների կազմակերպված ուժեղ շարժում չկար։ Երկրորդ համաշխարհային պատերազմին նախորդող ժամանակաշրջանում սովետական պետությունը միակ պետությունն էր, որը վարում էր խաղաղասիրական քաղաքականություն և ամեն կերպ աշխատում էր, որ կասեցվի նոր համաշխարհային պատերազմը։ Բայց այն ժամանակ սովետական պետությունը սոցիալիստական միակ երկիրն էր



և իր ուժերով դեռևս հնարավորություն չուներ ու չէր կարող կանխել նոր համաշխարհային պատերազմը։ Եվ այդ պատերազմը տեղի ունեցավ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի կողմից ընդունված բանաձևում և ընկեր Խրուշչևի հաշվետու զեկուցման մեջ զարգացվում է պատերազմների մասին մարքսիզմ-լենինիզմի թեորիան։

Ներկայումս պատերազմների ճակատագրական անխուսափելիություն գոյություն չունի, որովհետև ա) երկրորդ համաշխարհային պատերազմից հետո փոխվել են կապիտալիզմի ու սոցիալիզմի ուժերի հարաբերությունները։ Սոցիալիզմը աճել ու դարձել է համաշխարհային սիստեմ, որը գրավում է երկրագնդի տերիտորիայի մոտ $\frac{1}{4}$ և բնակչության $\frac{1}{3}$ մասը։ բ) Սոցիալիզմի լագերի երկրները իրենց տրամադրության տակ ունեն նյութական միջոցներ նոր պատերազմը կանխելու և ագրեսորին անհրաժեշտ հակահարված տալու համար։ գ) Ներկայումս գոյություն ունի խաղաղության կողմնակիցների ուժեղ համաշխարհային կազմակերպված շարժում։ Այդ շարժմանը մասնակցում են բարի կամքի տարբեր քա-

ղաքական հայացքներ ունեցող մարդիկ, որոնք պայքարում են այն բանի համար, որպեսզի թույլ չտրվի նոր համաշխարհային պատերազմ։ դ) Բացի սոցիալիզմի լագերի երկրներից, որոնք վարում են հետևողական, խաղաղասիրական քաղաքականություն, ելնելով երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներից,— գոյություն ունի դեմոկրատական երկրների մի խումբ (Հնդկաստան, Բիրմա և այլն) որոնք նույնպես պատերազմ չեն ցանկանում և կողմնակից են խաղաղ գոյակցությանը ու պայքարում են խաղաղությունը ապահովելու համար, կողմնակից լինելով սոցիալիզմի երկրների արտաքին քաղաքականության կուրսին։ ե) Ներկայումս կապիտալիստական երկրներում գոյություն ունի ավելի ուժեղ կոմունիստական և բանվորական շարժում։ Կոմունիստական և բանվորական պարտիաները ղեկավարում են իրենց երկրներում ծավալվող խաղաղության շարժումը և օրըստօրե ավելի ու ավելի մեծ հեղինակություն են ձեռք բերում իրենց երկրների աշխատավորական մասսաների մեջ։

Վերոհիշյալ պայմանների հետևանքով ներկայումս ստեղծվել է նոր իրադրություն, որի հետևանքով պատերազմի ճակատագրական



անխուսափելիություն չկա։ Եթե երկու տարբեր սիստեմների միջև պատերազմները ճակատագրական անխուսափելիություն չեն, դա չի նշանակում, որ առանձին կապիտալիստական պետությունների միջև պատերազմներ ծագել չեն կարող։

Իհարկե հնարավոր է նաև, որ իմպերիալիզմի ագրեսիվ շրջանները այժմյան պայմաններում էլ դիմեն ավանտյուրիզմի և սանձազերծեն նոր պատերազմ, բայց այդ դեպքում նրանք կստանան այնպիսի հակահարված, որից կփլվի իմպերիալիզմի փթած ամբողջ շենքը։ Իմպերիալիզմի ավանտյուրայի հանդեպ հանկարծակիի չգալու համար հարկավոր է ավելի ուժեղացնել մեր երկրի ու ամբողջ սոցիալիստական լագերի պաշտպանության ուժերը, հարկավոր է զգոն լինել իմպերիալիստական ուժերի դավերի հանդեպ։

---

# ՊԱՏՎՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Երևանի պոլիվինիլացետատ գործարանի № 01 ցեխի ագիտատոր Հ. Խաչատրյանի զրույցը բանվորների հետ.**

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները, — ասաց ագիտատորը, աշխատանքային բուռն վերելք են առաջ բերել մեր երկրի արդյունաբերության ու գյուղատնտեսության բնագավառի աշխատողների մեջ։ Այդ որոշումների լույսի տակ ներկայումս ամենուրեք վեր են հանվում այն ռեալ հնարավորությունները, որոնց իրականացմամբ 1956—1960 թվականների ընթացքում մենք կհասնենք արտադրական է՛լ ավելի բարձր ցուցանիշների։*

*Պարտիայի XX համագումարի որոշումները մեծ պարտավորություններ են դնում նաև քիմիական արդյունաբերության աշխատողների վրա։ Ագիտատորն այնուհետև խոսում է այն մասին, որ վեցերորդ հնգամյակում աշխատանքի արտադրողականության*



*բարձրացման և աշխատանքի պայմանների բարելավման նպատակով քիմիական արդյունաբերության մեջ կատարվելու է արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում։ Էլեկտրաէներգիայի հետագա արտադրության ավելացման հիման վրա տեղի կունենա արտադրության տեխնիկական մակարդակի վերելք և ներկայումս գործող հնագույն տիպի մեքենաների ու սարքավորումների փոխարեն տեղադրվելու են բարձր արտադրողականությամբ աշխատող մեքենաներ ու սարքավորումներ։*

*— Իսկ այդ նշանակում է,— շարունակում է ագիտատորը,— որ քիչ բանվորական ուժ ու նյութական քիչ միջոցներ ծախսելով մենք նույն ժամանակամիջոցում ավելի շատ արտադրանք կտանք, քան տվել ենք մինչև հիմա։ Այնուհետև ագիտատորը կանգ է առնում այդ ուղղությամբ իրենց մոտ կատարվող աշխատանքների վրա։*

*— Մեր գործարանի շահագործման հանձնելու օրից,— նշում է Խաչատրյանը,— 1951 թվականից սկսած, տարեցտարի բարձրացել է նրա տեխնիկական հագեցվածությունն ու տասնապատիկ անգամ ավելացել նրա արտադրական կարողությունը։ 1951*

թվականին ցածր արտադրական կարողություն ունեցող մեկ ցեխի փոխարեն գործարանն այժմ ունի գիտության վերջին նվաճումներին համապատասխան 10 ցեխ, որոնք ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերին մատակարարում են քիմիական անհրաժեշտ նյութեր։

Օգտագործելով կոնկրետ փաստեր, ագիտատորն այնուհետև ունկնդիրներին բացատրում է, որ առաջներում ձեռքով կատարվող մի շարք պրոցեսներ ներկայումս կատարվում են բարձր արտադրողականությամբ աշխատող մեքենաներով։ Վերջերս տեղադրվեց քացախաթթվի առաջին տեսակը ավելացնող երկրորդ խոշոր ապարատը։ 01 ցեխում կազմակերպված է արտադրության մնացորդների օգտագործումը։ Մշակված է քիմիական մի կարևոր նյութի թորման նոր եղանակ։

Ագիտատորի ուշադրությունից չի վրիպում նաև այնպիսի մի կարևոր հանգամանք, ինչպիսին ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկությունների արմատավորումն է։ Խոսելով այդ հարցի մասին, նա նշում է, որ միայն 1955 թվականին արտադրության մեջ ներդրվել է 144 նորարարական առաջարկություն, որը գործարանին



տվել է մոտ 7 միլիոն 100 հազար ռուբլու տնտեսում։ Հենց միայն քացախաթթվի ստացման տեխնոլոգիական պրոցեսը կատարելագործող առաջարկությունից ստացվել է 6 միլիոն 806 հազար ռուբլու օգուտ, բացի այդ, տնտեսվել է 710 տոննա սպիրտ, որը դրամական արտահայտությամբ կազմում է մի քանի միլիոն ռուբլի։ Գործարկման է հանձնված մի նոր, ավելի ամուր տեսակի հարմարանք, որը դիմանում է ամենաուժեղ թթուների ներգործությանը։ Այս առաջարկությունը տվել է 12 հազար ռուբլու խնայողություն։ Պլաստմասսայից պատրաստվող առարկաների մշակման համար կիսաավտոմատ հարմարանք ստեղծելու շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը այդ առարկաների գծով բարձրացել է 20 տոկոսով։

Հանրագումարի բերելով գործարանի արտադրական հաջողությունները, ագիտատոր խաչատրյանը ավելացնում է.

— Գործարանը իր հնգամյա պլանը արտադրանքի բոլոր տեսակների գծով կատարել է նոյեմբերի 21-ին։ Միայն 1955 թվականի ընթացքում տնտեսվել է 331 տոննա ածուխ, տրվել է մի քանի միլիոն ռուբլու ավել արտադրանք, խնայվել է 618 հազար

կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, քիմիական նյութերի խնայողության հաշվին թողարկվել է մեկ միլիոն 800 հազար ռուբլու արժողությամբ արտադրանք։ Այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը, 1954 թվականի համեմատությամբ, բարձրացել է 114,7 տոկոսով, իսկ ինքնարժեքն իջել է 21 տոկոսով։ Այնուհետև նա պատմում է 1955 թվականի ընթացքում գործարանում առաջին անգամ քացախաթթու ստանալու մի քանի պրոցեսներ ավտոմատացման ենթարկելու մասին, ապա ավելացնում, որ այս տարի իրագործվելու է 01 ցեխի հումքի ավտոմատիկ սնուցման պրոցեսը, 02 ցեխում՝ քիմիական հատուկ տեսակի յուղի տաքացումը, 10-րդ ցեխում՝ չորանոցների ջերմաստիճանի կարգավորումը, 03 ցեխում՝ պլաստմասսաների երկու նոր տեսակի մշակման աշխատանքները և այլն։

Ավարտելով գործարանի հաջողությունների մասին իր ասելիքը, ագիտատոր Խաչատրյանն անցնում է իրենց ցեխի ձեռք բերած նվաճումներին։

— Ինչպես ձեզ հայտնի է,— ասում է նա,— մեր ցեխը իր 1955 թվականի արտադրական պլանը կատարեց նոյեմբերի 2-ին։



Ցեխի պլանի ժամկետից շուտ կատարումը ամենից առաջ բացատրվում է արտադրական պրոցեսների մեքենայացմամբ և ռացիոնալիզատորական ու նորարարական առաջարկությունների արմատավորմամբ։

Թե անցած տարիների ընթացքում աշխատանքային ինչպիսի պրոցեսներ են մեքենայացվել ու բազմաթիվ առաջարկություններ արմատավորվել, դրանց մասին ագիտատորը ունկնդիրներին տալիս է սպառիչ պատասխաններ։ Նա պատմում է նաև այն մասին, որ արտադրանքի նոր տեսակների յուրացման գործում իրենց օժանդակության հասան և աշխատանքի կազմակերպման լավ օրինակ ցույց տվեցին անցած տարվա հոկտեմբեր—նոյեմբեր ամիսներին իրենց մոտ ժամանած Կուսկովա քաղաքի նույնատիպ գործարանի մասնագետներն ու ապարատավարները։ Այժմ նրանց օրինակով են աշխատում Գ. Հովսեփյանը, Ս. Դավթյանը, Ա. Սիմոնյանը, Հ. Ռաշոյանը, Ջ. Պողոսյանը և մյուսները, որոնք ամեն օր տալիս են նյութերի զգալի խնայողություն և արտապլանային արտադրանք։ Չսահմանափակվելով միայն դրական փաստերի նկարագրությամբ, ագիտատոր Խաչատրյանը միաժամանակ վեր է հանում ցեխի աշխատանք-

ներում տեղ գտած թերությունները և ունկնդիրների ուշադրությունը բևեռում նշված բացերը վերացնելու գործին օգնելու վրա։

— Ինչպես կարելի է հաշտվել այն մտքի հետ,— ասում է նա,— որ մենք ագրեգատների կարողությունը երբեմն լրիվ չօգտագործելու հետևանքով իջեցնում ենք նախատեսված ժամանակում թողարկվող արտադրանքի քանակը և միաժամանակ տալիս էլեկտրաէներգիայի գերածախս։ Կամ մեկ ուրիշ օրինակ,— ավելացնում է Խաչատրյանը և այս ասելով նա ունկնդիրների ուշադրությունը բևեռում է պատին փակցված այն պլակատի վրա, ուր գրված է՝ «Բանվորներ և ինժեներներ, հանդես եկեք ռացիոնալիզատորական և նորարարական լավագույն առաջարկություններով, դրանով կնպաստեք մեր Հայրենիքի հզորության ու ամրապնդմանը»։

— Գուցե ձեզանից ոմանք անհրաժեշտ ուշադրություն չեն դարձրել այս հարցի վրա, — բացատրում է ագիտատորը և ապա խորհրդի կարգով ցուցում է տալիս, որ լուրջ մտածեն այդ ուղղությամբ, քանի որ XX համագումարի Դիրեկտիվները հենց այդ են պահանջում իրենցից։



Ագիտատորն իր այդ հերթական զրույցն անցկացնելիս քիչ տեղ չէր հատկացրել նաև ունկնդիրներին ծանոթացնելու գործարանի ու ցեխի հեռանկարային պլաններին։

Զրույցի այդ մասից ունկնդիրները մեծ բավականությամբ իմացան, որ վեցերորդ հնգամյակում արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ գործարանի համախառն արտադրանքն ավելանալու է 9,5 անգամ։ Գործի են գցվելու մի շարք նոր ցեխեր, որոնք հնարավորություն կտան ներկայումս թողարկվող 6 տեսակ արտադրանքի փոխարեն բաց թողնել 14 տեսակի արտադրանք, աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է 4,3 անգամ, իսկ բանվորների թիվը կրկնապատկվելու է։

Բանվոր-ծառայողների կուլտ-կենցաղային պայմանները բարելավելու նպատակով կառուցվելու է բնակելի 2 նոր շենք։

Անդրադառնալով ՍՄԿԿ XX համագումարի պատվին ցեխի կոլեկտիվի կողմից վերցրած պարտավորություններին, ագիտատորը զրույցի մասնակիցների ուշադրությունը բևեռում է ստանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու վրա։ Նա կոչ է անում պայքարել առաջին եռամսյակի պլան.

ները կատարելու ժամկետից շուտ՝ մարտի 25-ին, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 6 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջեցնել երկու տոկոսով։ Իսկ դրանց հասնելու համար ագիտատորը ունկնդիրների առաջ հարց է դնում՝ ճիշտ և արդյունավետ օգտագործել հիմնական ու օժանդակ նյութերը, ագրեգատների կարողությունը, տնտեսել հումքը։

Զրույցի ժամանակ դիդակտիկ նյութերի միջոցով ագիտատորը ետ մնացողներին պարզաբանում է առաջավորների աշխատանքի դրական փորձը և խորհուրդ տալիս նրանց հետևել առաջավորների օրինակին։

— Միայն այս ճանապարհով մենք կարող ենք հասնել բարձր ցուցանիշների և կատարել մեր ստանձնած պարտավորությունները — վերջացնելով իր զրույցը ասում է 01 ցեխի հերթափոխության ագիտատոր ընկ. Հ. Խաչատրյանը։

---

## ԱՇԽԱՐՀԻ ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ

# ՍՈՒԴԱՆ

Սուդանը գտնվում է Աֆրիկայի Հյուսիս-արևելյան մասում։ Նրա տերիտորիան հավասար է 2,5 միլիոն քառակուսի կիլոմետրի։ Դա գրեթե երկու անգամ մեծ է Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի և Իտալիայի տարածությունից՝ միասին վերցրած։ Սուդանի բնակչությունը կազմում է մոտ 9 միլիոն մարդ, հիմնական լեզուն արաբերենն է։

Երկրում մեծ է այն բնակիչների թիվը, որոնք քոչվորական և կիսաքոչվորական կյանք են վարում։ Նստակյաց բնակչությունը հիմնականում կենտրոնացած է խոշոր գետերի՝ Սպիտակ և Երկնագույն Նեղոսի, Աթբարայի հովիտներում։ Հենց այստեղ էլ գտնվում են Սուդանի խոշորագույն քաղաքները՝ մայրաքաղաք Խարտումը (մոտ 75 հազար բնակիչ), Օմդուրմանը (130 հազար) և այլն։

Սուդանի ընդերքը հարուստ է օգտակար շատ հանածոներով՝ ոսկի, պղինձ, կապար, անագ, երկաթահանք և այլ մետաղներ։ Երկրում հնարավորություններ կան հաջողությամբ գյուղատնտեսություն վարելու համար, որը բնակչության հիմնական զբաղմունքն է։ Այստեղ աճեցվում են հացահատիկային կուլտուրաներ, բամբակ, որի ցանքատարածությունը

հասնում է 250 հազար հեկտարի։ Ամենուրեք տարածված է անասնապահությունը։ Սակայն չնայած իր բնական հարստություններին և նպաստավոր կլիմայական պայմաններին, Սուդանը մի երկիր է, որտեղ ցածր է արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման մակարդակը։

Սուդանում կան մի քանի արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք տեղական հումք, գլխավորապես բամբակ են վերամշակում։ Բամբակը արտահանության գլխավոր ապրանքն է։ Սուդանը ներմուծում է հիմնականում արդյունաբերական ապրանքներ։

Բնորոշ է այն փաստը, որ Սուդանի բնակչության 90 տոկոսը անգրագետ է։ Սուդանի տնտեսական և կուլտուրական այդ հետամնացությունը բացատրվում է նրանով, որ երկրում երկար ժամանակ տեր ու տնօրեն են հանդիսացել գաղութարարները, որոնք ոչինչ չեն տվել սուդանական ժողովրդին, բացի աղքատությունից ու սովից։ Սուդանի նորագույն պատմությունը սերտորեն կապված է Անգլիական գաղութային քաղաքականության հետ։

Անգլիան Սուդանում ամրանալու փորձեր սկսեց անել անցած դարի երկրորդ կեսերից։ Օտարերկրյա զավթիչների ներխուժմանը սուդանական ժողովուրդը պատասխանեց ազատագրական անձնվեր պայքարով։ Այն ժամանակ բրիտանական կառավարությունը Սուդան է ուղարկում մի մեծ պատժիչ էքսպեդիցիա։



Անգլիական զորքերը օկուպացնում են երկիրը և ոչնչացնում նրա անկախությունը։

Սուդանը դարձնելով իր գաղութը, Անգլիան փորձում էր գործել թաքնվելով եգիպտական դրոշի տակ։ 1899 թվականին անգլիական կառավարությունը Սուդանը հայտարարեց կոնդոմինիում, այսինքն՝ Անգլիայի և Եգիպտոսի, որն այն ժամանակ նույնպես օկուպացված էր անգլիական զորքերի կողմից, համատեղ տիրույթ։ Գերագույն իշխանությունը Սուդանում անցավ բրիտանական գեներալ-նահանգապետի ձեռքը, որը դարձավ երկրի լիիշխան տերը։ Անգլո-եգիպտական կոնդոմինիումը, այսպիսով, դարձավ այն հարմար ձևը, որով անգլիական գաղութարարները իրենց տիրապետությունը հաստատեցին Սուդանում։

Անգլիական տիրապետության ամբողջ ընթացքում սուդանական ժողովուրդը քաջարի պայքար էր մղում իր ազատության համար։ Այդ պայքարը առանձնահատուկ թափ ստացավ երկրորդ համաշխարհային պատերազմի վերջանալուց հետո, երբ Աֆրիկայի շատ երկրներում ազգային ազատագրական շարժման հզոր ալիք բարձրացավ։

1951 թվականին եգիպտական պառլամենտը չեղյալ հայտարարեց 1936 թվականի անգլո-եգիպտական ստրկական պայմանագիրը, որի հիման վրա Անգլիան միջամտում էր Եգիպտոսի ներքին գործերին և նրա տերիտորիայում (Սուեզի ջրանցքի գոտում) գտնվում

էին անգլիական զորքեր։ Միաժամանակ վերացվեց անգլո-եգիպտական կոնվենցիան՝ Սուդանի նկատմամբ կոնդոմինիում հաստատելու մասին։

Սուդանցիները խանդավառությամբ ընդունեցին եգիպտական պառլամենտի այդ որոշումը, որը Սուդանում ազգային-ազատագրական շարժման նոր հզոր վերելքի խթան հանդիսացավ։ Ազատագրական պայքարի ելան բնակչության բոլոր խավերը՝ բանվորները, գյուղացիները, ազգային բուրժուազիան։ Հակաիմպերիալիստական մի շարք ելույթներ կազմակերպեց Սուդանի պրոֆմիությունների ֆեդերացիան, որն իր շարքերում միավորում է ավելի քան 150 հազար անդամների։

Սուդանում անգլիական ադմինիստրացիայի դրությունը, որը երկիրը կառավարում էր սվինների օգնությամբ, շատ երերուն դարձավ։ Այդ պայմաններում անգլիական կառավարությունը հարկադրված եղավ դիմել զիջումների։

1953 թվականի փետրվարին Անգլիայի և Եգիպտոսի միջև կնքվեց մի համաձայնագիր, որով նախատեսվում էր, որ Սուդանի բախտը վերջնականապես պետք է որոշի Սուդանի պառլամենտը 1955 թվականին։ Այդ ժամանակամիջոցում անգլիական գեներալ-նահանգապետի համար պահպանվում էին նրա բոլոր լիազորությունները, բայց Եգիպտոսի, Սուդանի, Անգլիայի ու Պակիստանի ներկայացուցիչներից ստեղծվեց մի հանձնաժողով՝ նրա գործողու-



թյունները հետևելու համար։ Որոշվեց նաև այն եռամյա «անցման ժամանակաշրջանը», որի ընթացքում պետք է կատարվեր բոլոր օտարերկրացիների փոխարինումը սուդանցիներով կառավարական ապարատի, բանակի և ոստիկանության ղեկավար պոստերում։

Հարկադրաբար դիմելով զիջումների, անգլիական գաղութարարները ձեռք էին առնում բոլոր միջոցները, որպեսզի թույլ չտան կազմակերպելու սուդանական անկախ պետություն։

1955 թվականի դեկտեմբերի վերջին Սուդանի պառլամենտը որոշում ընդունեց՝ Սուդանը հռչակել անկախ ռեսպուբլիկա և 1956 թվականի հունվարի 1-ին պետության մայրաքաղաք Խարտումում հանդիսավոր կերպով բարձրացվեց Սուդանական ռեսպուբլիկայի եռագույն դրոշակը։ Աֆրիկայի քարտեզի վրա երևաց մի նոր, սուվերեն պետություն։

«Սովետական կառավարությունը,— նշված է Ն. Ա. Բուլգանինի՝ Ալ-Ազխարիին ուղղված հեռագրում,— համոզված է, որ Սուդանի անկախության հռչակումը, ինչպես նաև դիվանագիտական հարաբերությունների հաստատումը ՍՍՌՄ-ի և Սուդանի միջև, կնպաստի միջազգային համագործակցության զարգացմանը, ընդհանուր խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդմանը»։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՊՐԻԼ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

(Վ. Ի. Լենինի ծննդյան 86-ամյակի առթիվ)

*1. Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՂՆ Է։*

*2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է։*

*3. ԼԵՆԻՆԻԶՄԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԻ ԴՐՈՇՆ Է ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ։*

*4. ԼԵՆԻՆԸ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ԴԱՇԻՆՔԻ ՄԱՍԻՆ։*

*5. ԼԵՆԻՆԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԻ ՎՃՌԱԿԱՆ ԴԵՐԻ ՄԱՍԻՆ ԵՎ ՆՐԱ ՊԱՅՔԱՐՆ ԱՆՀԱՏԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ԴԵՄ։*



*6. ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՎ ՊԱՐՏԻԱՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ ԵՆ։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ — Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին. *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ — ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—60 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Զեկուցում պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956։*

Լ. Մ. Կագանովիչի, Ա. Ի. Կիրիչենկոյի, Գ. Մ. Մալենկովի, Ա. Ի. Միկոյանի, Վ. Մ. Մոլոտովի, Մ. Գ. Պերվուխինի, Մ. Զ. Սաբուրովի, Մ. Ա. Սուսլովի. Կ. Ե. Վորոշիլովի *ճառերը պարտիայի XX համագումարում, Հայպետհրատ, 1956։*

*7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻՋԵՎ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ — Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին. *Մաս առաջին, Հայպետհրատ, 1956։*

Դ. Տ. ՇԵՊԻԼՈՎ, Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— *Ճառ պարտիայի XX համագումարում, Հայպետհրատ, 1956։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ, Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ, Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ— Ճառ պարտիայի XX համագումարում, *Հայպետհրատ, 1956։*

Սովետա-Դանիական կոմյունիկե, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 8-ի համարում։*

## *8. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԻՆ ՏԱՐՎԱ ՊԼԱՆՆԵՐԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, մաս 2-րդ, արդյունաբերություն և տրանսպորտ։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Զեկուցում պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 25-ի համարում։*



Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել նոր աստիճանի, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 7-ի առաջնորդողը։*

## *9. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, մաս 2-րդ։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Զեկուցում պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956։*

Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ, Մ. Գ. ՊԵՐՎՈՒԽԻՆ— Ճառ պարտիայի XX համագումարում, *Հայպետհրատ, 1956։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշումը Գյուղատնտեսական արտելի կանոնադրության և կոլտնտեսային արտադրության կազմակերպման ու արտելի գործերի կառավարման ասպարեզում կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մարտի 10-ի համարում։*

## 10. ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԳԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ՈՐԱԿԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *մաս 2-րդ, Գյուղատնտեսություն, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Զեկուցում պարտիայի XX համագումարին, 2-րդ մաս, գյուղատնտեսության բնագավառի խնդիրները, Հայպետհրատ, 1956։*

Ա. Ի. ԿԻՐԻՉԵՆԿՈ— Ճառ պարտիայի XX համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 17-ի համարում։*

## 11. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960



թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *մաս 4-րդ, Գյուղատնտեսության վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի փետրվարի 26-ի համարում։*

Վորոնեժցիների օրինակով, *«Հայաստանի կոլտնտեսական», 1956 №1, էջ 43։*

Խոպան ու խամ հողերը յուրացնող կոմերիտականներին և կոմերիտուհիներին, բոլոր պատանիներին և աղջիկներին խոպան և խամ հողերի յուրացման ժամանակ աչքի ընկած կոմերիտականների և երիտասարդության խորհրդակցության մասնակիցների Դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունվարի 23-ի համարում։*

Ռոստովի մարզի ՄՏԿ-ների և շինարարական կազմակերպությունների բանվորների, ինժեներա-տեխնիկական կազմի աշխատողների, ծառայողների Դիմումը մեքենա-տրակտորային կայանների շինարարությամբ զբաղված բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս.Հ.»-ի 1956 թվականի մարտի 18-ի համարում։*

---

# ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

«Թևավոր խոսք» կոչվում է այն խոսքը, որ գործածվելով որևէ մեկի կողմից բանավոր կերպով կամ գրականության մեջ, այնուհետև լայն տարածում է գտնում շնորհիվ իր մեծ արտահայտչականության: Թևավոր խոսքը մտքերը պատկերավոր կերպով արտահայտելու միջոց է: Նրա առավելությունն այն է, որ բարդ երևույթը արտահայտում է դիպուկ և միաժամանակ հակիրճ խոսքով:

Ագիտատորը պետք է գիտենա շատ թևավոր խոսքեր և անհրաժեշտ դեպքում օգտագործի դրանք՝ իր զրույցը արտահայտիչ, պատկերավոր լեզվով և հետաքրքիր վարելու համար:

Բերում ենք մի քանի թևավոր խոսք, որ իրենց երկերում օգտագործել են նշանավոր գրողները և Կոմունիստական պարտիայի գործիչները:

«Նարցիս»

Հունական միֆոլոգիայի մեջ պատմվում է, որ Նարցիսը գեղեցիկ պատանի էր, գետերի աստծու և ջրահարսի որդին: Նա երբեք ոչ ոքի չէր սիրել: Մի անգամ թեքվելով գետակի վրա և նրա մեջ տեսնելով իր սեփական դեմքը, սիրահարվեց ինքն իր վրա և մեռավ կարոտից: Նրա մարմինը փոխվեց ծաղկի:



Այսպիսով Նարցիսի անունը դարձել է բնորոշ այն մարդկանց համար, որոնք սիրահարվում են իրենք իրենց վրա, իրենց խղճուկ մտքերի և գաղափարների վրա, հիանում են միայն իրենցով: Ռուս հռչակավոր գրող-երգիծաբան՝ Սալտիկով-Շչեդրինը Նարցիս էր անվանում իր ժամանակի լիբերալ-շաղակրատներին, որոնք սիրահարված էին իրենց իսկ դատարկ ֆրազաբանությանը:

Այս թևավոր խոսքը հաճախ օգտագործել է Լենինը: Այսպես, օրինակ. «Պարենային հարկի մասին» աշխատության մեջ մերկացնելով մանր-բուրժուական պարտիաների գործիչներին՝ ինքնասիրահարված, «ֆրազի հերոսներին», Լենինը գրել է. «Բոլոր երկրներում, բոլոր ռևոլյուցիաների ժամանակ իսկական, գործարար բուրժուազիան տասնյակ անգամ այդ քաղքենիական Նարցիսներին՝ մենշևիկներին, էսեռներին, անպարտիականներին, հարյուրներով հիմարացրել է ու վռնդել: Այդ ապացուցել է պատմությունը: Այդ ստուգված է փաստերով: Նարցիսները կշաղակրատեն: Միլյուկովներն ու սպիտակ-գվարդիականները գործ կկատարեն»: (Երկեր հատ. 32, էջ 461):

«Մեր նախնիները փրկել են Հռոմը»

Այս թևավոր խոսքն առաջացել է այն ավանդությունից, ըստ որի սագերն իրենց կչկչոցով արթնացրել են Հռոմի Կապիտոլիայի՝ քաղաքի ամրոցի պահապաններին այն ճակատագրական մոմենտին, երբ թշնամիները— գալլիացիները— գիշերը գաղտագողի

*մտնում էին ամրոցը և քիչ էր մնում գրավեին այն։ Դրանով սագերը փրկել են Հռոմը։ Այս թևավոր խոսքը օգտագործել է ռուս հռչակավոր առակագիր Կռիլովը իր՝ «Սագերը» առակի մեջ։ Գյուղացին ճիպոտով սագերին քշում է քաղաք՝ վաճառելու։ Նրանք սկսում են գանգատվել անցորդին այն բանի համար, որ գյուղացին իրենց հետ վարվում է որպես հասարակ մահկանացուների, այնինչ նա պարտավոր է հատուկ հարգանք ցույց տալ սագերին։*

*Երբ անցորդը հարցնում է, թե ինչով են նրանք աչքի ընկել, ինչ օգուտ են տալիս, սագերը պատասխանում են՝ «Մեր նախնիները փրկել են Հռոմը»։*

*Այսպիսով այս խոսքն օգտագործվում է բնորոշելու համար այն մարդկանց, որոնք պահանջում են գնահատել իրենց ոչ թե կոնկրետ գործերով, այլ հեռավոր նախնիների կամ անցյալի ծառայություններով։ Լենինի երկերում հանդիպում ենք, օրինակ, այդ թևավոր խոսքի օգտագործման այսպիսի օրինակի, կամենալով ցույց տալ, որ Ռուսական առաջին ռևոլյուցիային հաջորդող ռեակցիայի տարիներին մենշևիկները, որ վարում էին հակապարտիական, լիկվիդատորական գիծ և հեղինակություն շահելու համար վկայակոչում էին իրենց շատ հին ծառայությունները, Լենինը գրում է. «Հանրամատչելի բանվորական «Վպերյոդ» թերթի նախկին խմբագիր»— այսպես է ստորագրում այժմ ընկ. Մաքսիմովը, կամենալով հիշեցնել ընթերցողին, թե իբր «սագերը փրկել են Հռո-*



*մը» («Օտզովիզմի և աստվածաշինարարության կողմնակիցների ֆրակցիայի մասին», Երկեր, հատ. 16, էջ 60)։*

«Երկյուղն է աստվածներ ստեղծել»

*Այս արտահայտությունը սկիզբ է առնում հռոմեական բանաստեղծ Պուբլիա Պապոլիա Ստացիայի (մեր թվաց. 1-ին դար) «Թիվիադա» պոեմից։ «Աշխարհում առաջին անգամ երկյուղն ստեղծեց աստվածներին», գրել է նա այդ պոեմում։ Հայտնի ֆրանսիական սոցիալիստ, մարքսիզմի գաղափարների տարածող Պոլ Լաֆարգը (1842—1911) այդ խոսքերը մեջ բերելով իր՝ «Կ. Մարքսի էկոնոմիկական դետերմինիզմը» աշխատության մեջ (1909) նկատում է, որ եթե ճիշտ են բանաստեղծի այդ խոսքերը, ապա ավելի ճիշտ է այն, որ սեփականության առաջացումով աստվածները ստեղծվեցին միայն նրա համար, որ երկյուղ ներշնչեն։*

*Այս թևավոր խոսքին հանդիպում ենք Լենինի մոտ, օրինակ. «Բանվորական պարտիայի վերաբերմունքը կրոնի հանդեպ» հոդվածում Լենինը գրել է. «Աշխատավոր մասսաների սոցիալական ճնշվածությունը, նրանց առերևույթ կատարյալ անօգնականությունը կապիտալիզմի կույր ուժերի հանդեպ, որն ամեն օր և ամեն ժամ հազարապատիկ ավելի ամենասոսկալի տառապանքներ, ամենավայրագ տանջանքներ է պատճառում շարքային բանվոր մարդկանց, քան ամեն տեսակ արտակարգ պատահարներ...,*

—ահա թե որտեղ է կրոնի ամենախոշոր արմատը։ «Երկյուղն է աստվածներ ստեղծել»։ «Երկյուղը կապիտալի կույր ուժի հանդեպ, որը կույր է, որովհետև ժողովրդի մասսաները չեն կարող նախատեսել,— որը պրոլետարի ու մանր տնտեսատիրոջ կյանքի ամեն մի քայլափոխում սպառնում է նրան բերել «հանկարծահաս», «անակնկալ», «պատահական» քայքայում, կորուստ...» (Երկեր, հատ. 15, էջ 505)։

**«Բոլոր և ամեն տեսակի դիմակների պատռում»**

*Լենինի արտահայտությունն է «Լև Տոլստոյը որպես ռուսական ռևոլյուցիայի հայելի» հոդվածից, որ դարձել է թևավոր խոսք։ Բացահայտելով Տոլստոյի ստեղծագործության հակասությունները, ցույց տալով նրա երկերի վիթխարի ճանաչողական ու գեղարվեստական նշանակությունը և շահագործողական հասարակության մերկացնող քննադատությունը, Լենինը գրում է. «Մի կողմից ամենազգաստ ռեալիզմ, բոլոր և ամեն տեսակի դիմակների պատռում, մյուս կողմից՝ աշխարհում եղած ամենանողկալի բաներից մեկի՝ այն է՝ կրոնի քարոզը...» (Երկեր, հատ. 15, էջ 244)։*

*Այս արտահայտությունը գործ է ածվում հասարակության արատների անողոք և համարձակ քննադատության, կյանքի բացասական երևույթների նկատմամբ անհաշտ տրամադրությունները բնորոշելու համար։*

**«Կրակից շագանակ հանել»**

*Այս խոսքը դարձել է թևավոր 17-րդ դարի հայտնի*



*առակագիր Լաֆոնտենի «Կապիկը և կատուն» առակից։ Կապիկը ստիպում է կատվին շագանակ հանել կրակից։ Կատուն այդ անելիս այրում է թաթերը, իսկ շագանակն ուտում է կապիկը։ Այսպիսով այդ արտահայտությունն օգտագործվում է այն նշանակությամբ, որ մեկն անմիտ կերպով, ի վնաս իրեն, աշխատում է ուրիշի, ձրիակերի օգտին։*

---

## СОДЕРЖАНИЕ





Խմբագիր՝ Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*ԻԼՅԱ ԷՐԵՆԲՈՒՐԳ— «Իններորդ ալիք»: Գինը 17 ռ. 40 կ., 954 էջ, տիրաժ 5000:*

*ՐԱՖՖԻ— «Երկերի ժողովածու»: Չորրորդ հատոր: Գինը 11 ռ., 543 էջ, տիրաժ 25.000:*

*ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԱՆ— «Ընտիր երկեր»: Գինը 13 ռ., 689 էջ, տիրաժ 10000:*

*Ս. ԱԼԻԽԱՆՅԱՆ— «Վահան Տերյանի պետական գործունեությունը»: Գինը 3 ռ. 45 կ., 191 էջ, տիրաժ 5000:*

*Վ. ԱՂՈՒԶՈՒՄՑՅԱՆ— «Միքայել Նալբանդյանի սոցիալ-տնտեսագիտական հայացքները»: Գինը 3 ռ. 25 կ., 165 էջ, տիրաժ 5000:*

*ԱԼ. ՄԱՆԱՍՅԱՆ— «Պայքար կովերի անպտղության և վիժումների դեմ»: Գինը 1 ռ. 40 կ., 95 էջ, տիրաժ 3000:*

---

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 6** **1956 г.**

*ՎՖ 01586* *Պատվեր 267* *Տիրաժ 9.000*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.:*